## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՉԱՐԼԻԶ ՄՈՐԿԸՆ, անգլիացի աշխարհահռչակ վիպագիրը յանկարծամահ եղաւ անցեալ օր, 64 տարեկանին։ Մորկըն իր գրական կեանքը սկսած է հրապարակագրութեամբ (թատերական քննադատն էր «Թայմզ»ի)։ Իր ծանօթ վէպերն են՝ Ֆոնթէն, Ափառքընպրօք, Փորթրէ տան գ'ինօն միրուար եւայլն։ Իր մահով, Ֆրանսան կը կորսնցնէ մեծ բարեկամ մը։ Ծանօթ է իր նշանաւոր ձօնը Ֆրանսայի՝

Եղիր Ֆրանսան,
Փլած երկինքներու առջեւ,
Մնացիր աշխարհի աստղը,
Եւ առաջնորդէ անոր ճակատագիրը։

ԱԼԺԵՐԻՈՅ Օրանի շրջանին մէջ վեր-ջերս պատահած կռիւներու ընթացքին 65 ապստամբներ սպաննուեցան եւ 32 ուրիշներ գերի ինկան։

ԻՖՆԻԻ մէջ նոր միջադէպեր պատահեցան վերջին երկու օրերու ընթացքին, կը հաղորդէ Մատրիտի Պատերազմական նախարարութիւնը. սպանական ուժերը յաջողած են զսպել ըմբոստները։

ՍԱԿԱՐԱՆ (Փետր. 6). — Ձոյլ ոսկի՝ 526.000, նափոլէոն 3650, զուից. 3490, անգլ. 4380, քսան տոլարնոց 17.880, Թղթադրամ (զուգահեռական շուկայ) սթերլին 1210, տոլար 453, զուից. 109, պելժ. 8.90, լիր 0.73։

### ԱԼՖՈՐՎԻԼԻ ՀԱՅ ՄԱՐԶԱԿԱՆ

Ախոյենական մեծ մրցում Ալֆորվիլի Մարզականին դաշտին վրայ ընդդէմ՝ Ֆոնթէնէպլոյի զօրաւոր խումբին, այս կիրակի ժամը 13.30ին։

### ԽՆՋՈՅՔ ՎԱԼԱՆՍԻ ՄԷՋ

Համախմբերդ. Հայր. Միութիւնը խնջոյք մը կազմակերպած է այս Շաբաթ, երեկոյ Պ. Գ. Սիմոնեանի սրճարանը։ Մուտքը ազատ է։

### ՊԱՏԱՐԱԳ ԵՒ ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ այս կիրակի ժամը 10ին պիտի մատուցուի հանդիսաւոր քառաձայն Ս. պատարագ։

ՍՐԲՈՑ ՂԵՒՈՆԴԵԱՆՑ տօնին առթիւ Փարիզի եւ շրջանի եկեղեցիներու մէջ ծառայող, վախճանած հետեւեալ քահանայ հայրերուն համար պիտի կատարուի հոգեհանգստեան պաշտօն։

Գէորգ Արք. Իւթիւճեան, Յովհ. քհնյ. Հիւնքեարպէյէնտեան, Արժ. Տէր Սահակ քահանայ Իւթիւճեան, Կոմիտաս քահանայ Սըպեան, Բարնաբաս քահանայ Խընտամեան, Աբիսողոմ քահանայ Թոփրոսեան, Մեսրոպ քհնյ. Մեսրոպեան, Վահան քհնյ. Խոյեան, Բարթող քհնյ. Թագըմճեան, Գարեգին քհնյ. Տէօվլէթեան, Մկրտիչ քհնյ. Արսլանեան, Գէորգ քհնյ. Դաւիթեան, Լեւոն քհնյ. Արսլանեան, Գէորգ քհնյ. Նիզամեան, Ներսէս քհնյ. Գանճեան, Գրիգոր քհնյ. Ճէպէճեան, Յուսիկ քհնյ. Ադամեան։

Կը հրաւիրուին իրենց պարագաները եւ հայ հասարակութիւնը։

### ՀՐԱՒԷՐ

Հ. Բ. Ը. Միութեան Նուպարեան Մատենադարանի վարչութիւնը պատիւ ունի ծանուցանելու թէ յառաջիկայ դասախօսութիւնը տեղի պիտի ունենայ այսօր շաբաթ, ժամը 18ին, Մատենադարանի սրահներուն մէջ, 11 Սքուար Ալպոնի։

Դասախօսն է՝

MONSIEUR PIERRE RONDOT
Directeur du Centre de Hautes Etudes
d'Administration Musulmane, Université de Paris

Նիւթ ունենալով «ՀԱՅ ԱԶԳԻՆ ԿՈՉՈՒՄԸ»։

### ՊԱՐԱՆՑԻԿ ՑԵՐԵԿՈՅԹ

Կազմակերպուած Հ. Յ. Դ. Նոր Սեբաստիոյ Իսիի մասնաճիւղի կողմէ։

Այս կիրակի ժամը 3էն 10, Խրիմեան դպրոցին մէջ 2 րիւ տը լա Տէֆանս։

Հաղորդակց. միջոց. — Մէրի տ'Իսիէն առնել 190 թիւ օթօպիւսը եւ իջնել րիւ տը լա Տէֆանս։

Կը հրաւիրուին բոլոր մասնաճիւղերու ընկերները, ինչպէս նաեւ համակիրները։

### ՀՈԳԵՀԱՆԳՍՏԵԱՆ ՊԱՇՏՕՆ ՇԱՒԱՐՇ ՄԻՍԱՔԵԱՆԻ ՅԻՇԱՏԱԿԻՆ

Այս Կիրակի (9 Փետրուար) Առնուվիլի Վարագայ Ս. Խաչ եկեղեցւոյ հոգաբարձութիւնը, որոշած է յաւէտ ողբացեալ Շաւարշ Միսաքեանի Ա. տարելիցին առթիւ յիշատակը վերակոչել եւ հոգեհանգստեան մասնաւոր պաշտօն կատարել Ս. եկեղեցւոյս մէջ։

×

### ԼԻՈՆԻ ՄԷՋ

Լիոնի Հ. Յ. Դ. «Վարանդեան» կոմիտէն կը ծանուցանէ թէ ողբացեալ Շաւարշ Միսաքեանի մահուան տարելիցին առթիւ, հոգեհանգստեան պաշտօն պիտի մատուցուի Հայոց եկեղեցիին մէջ, այս Կիրակի առաւօտ, յետ պատարագի։

### ՊՈՄՈՆԻ ՄԷՋ

Պոմոնի Հ. Յ. Դ. Զաւարեան ենթակոմիտէն, «Յառաջ» խումբ, Նոր Սերունդ եւ Կ. Խաչը կը ծանուցանեն թէ՝ այս կիրակի առաւօտեան ժամը 11ին հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի Շաւարշ Միսաքեանի մահուան առաջին տարելիցին առթիւ, Պոմոնի Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյ մէջ։

### ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Տէր եւ Տիկին Գրիգոր Թեւանեան եւ զաւակները կը ծանուցանեն թէ իրենց մօր այրի Տիկին ՇԱՀԶԱՏԷ ՈՒԶՈՒՆԵԱՆԻ մահուան տարելիցին առթիւ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի այս կիրակի առաւօտ, Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցիին մէջ։

Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յարգողները։

×

Գալէնտէրեան ընտանիքը կը ծանուցանէ թէ այս կիրակի առաւօտ յետ պատարագի Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցին հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի՝

ԳԱԼԷՆՏԷՐԵԱՆ եւ ՄԻՔԱՅԷԼԵԱՆ ընտանիքներու համայն ննջեցեալներուն յիշատակին։

Կը հրաւիրուին ողբացեալներուն յիշատակը յարգողները։

×

Տէր եւ Տիկին Յովակիմ Խօքսիզեան կը ծանուցանեն թէ այս կիրակի Վալանսի Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցիին մէջ հոգեհանգիստ պիտի կատարուի իրենց հին ու նոր ննջեցեալներուն եւ Գաբրիէլեան ընտանիքին հանգուցեալ անդամներուն ի յիշատակ։

Կը հրաւիրուին ազգականներն ու բարեկամները։

### ՀՐԱՒԷՐ ԱՐՏԱԿԱՐԳ ԸՆԴՀԱՆՈՒՐ ԺՈՂՈՎԻ

Փարիզի Հայ Ազգատախնամ Ընկերակցութիւնը արտակարգ ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր բոլոր անդամները, 15Փետր. Շաբաթ օր, կէսօրէ վերջ ժամը երեքին, 32 րիւ տը Թրէվիզ։

Այս ժողովը ի զօրու ըլլալու համար անհրաժեշտ է մեծամասնութիւն, այս պատճառաւ եւ մանաւանդ նկատի առնելով օրակարգի կարեւորութիւնը բոլոր անդամներէն կը խնդրուի ստիպողական ներկայութիւն այս արտակարգ ժողովին։

ՕՐԱԿԱՐԳ. — Անտիլի մէջ անբուժելիներու 20 անկողիննոց յաւելուածական շէնքի մը կառուցման առթիւ վարչական խորհուրդին որոշած փոխառութեան վաւերացումը։ ԿՆԻՔ



Imprimé sur les presses du journal HARATCH
17, Rue Bleue, 17 — PARIS (9e)

Հ. Յ. Դ. ՈՒՍ. ՌՈՒԲԷՆ ՄԻՈՒԹԻՒՆ

### ՀՐԱՊԱՐԱԿԱՅԻՆ ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆ

Նիւթ՝

ՍՈՒԷԶԻ ՋՐԱՆՑՔԸ

Ա. Պատմական 16
Բ. Իրաւական
Գ. Միջազգային դաշնագրեր

Դասախօս՝ ԽԱԶԻԿ ՌՇՏՈՒՆԻ

Ուրբաթ, 14 Փետրուար, ժամը ճիշդ 21ին, Քաֆէ Քատէի վերնայարկը։

Միութիւնս սիրով կը հրաւիրէ ընկերները, հայ ուսանողութիւնն ու հայրենակիցները անխտիր։

### ՀԱՅԱՑԵԼ ՊԱՏԱՐԱԳ ՎԵՐՍԱՅԼԻ ՄԷՋ

Այս կիրակի, ժամը 9.45ին Գերպ. Հ. Կ. Ծ. Վ. ԱՄԱՏՈՒՆԻ պիտի մատուցանէ ձայնաւոր պատարագ Սէն Սենֆօրիէնի եկեղեցիին մէջ (Փլաս Սէն Սենֆօրիէն)։

Երգչախումբը կը ղեկավարէ Պ. Վ. Տէվէճեան։

### ԽԻՍՏ ՇԱՀԵԿԱՆ ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆ

Հ. Յ. Դ. Փարիզի Շրջ. կոմիտէն դասախօսական ժողովի կը հրաւիրէ Փարիզի եւ շրջաններու բոլոր ընկերները, Շաբաթ (Փետրուար 8) երեկոյ ժամը 8.30ին, Սօսիէթէ Սավանթի ԱՇ սրահին մէջ։ 28 րիւ Սէրփանթ, մէթրօ Օտէօն։

Կը դասախօսէ ընկ. ԻՇԽԱՆԵԱՆ

Այս դասախօսութեան կը հրաւիրուին «Նոր Սերունդի» հին ու նոր անդամները, ինչպէս նաեւ ուսանողական միութեան երիտասարդները։

### ՌՈՆԻ – ՍՈՒ. ՊՈՒԱՅԻ ԼՍԱՐԱՆ

Հերթական դասախօսութիւնը այս շաբաթ, ժամը 21ին, Քաֆէ տիւ Քոմէրսի վերնայարկը։

Կը դասախօսէ՝ Պ. Վ. ՁԷՅԹՈՒՆՑԵԱՆ։

Նիւթն է՝ «Հայկական հարցը եւ ռուսցարական կառավարութիւնը»։

Կը խնդրուի ճիշդ ժամուն ներկայ ըլլալ։

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՄԱՆՉԵՍԹԸՐ ԻՒՆԱՅԹԸՏԻ խումբին կրած արկածը մեծ յուզում պատճառած է աշխարհի մէջ: Ազգային սուգ հռչակուեցաւ Անգլիա, իսկ կիրակի օր աշխարհի բոլոր ֆութպոլի դաշտերուն վրայ Լիզպոնայէն մինչեւ Խ. Միութիւն մէկ վայրկեան յոտնկայս լռութիւն պիտի պահուի: 15 մարզիկներէն, որոնց 7ը «միջազգայիններ» են, եօթը մեռան, հինգ հոգի մահաքունի մէջ է Միւնիխի հիւանդանոցին մէջ: Կը կարծուի թէ արկածը չարժակներէն յառաջ եկած է:

ԱՄԵՐԻԿԵԱՆ օդային բանակը ուրբաթ օր նոր հրթիռ մը արձակեց՝ Աթլաս, Քափ Քանավերալէն: Այս անգամ ալ փորձը չյաջողեցաւ եւ հրթիռը կրակ առաւ հազիւ օդը բարձրացած: Ինչպէս կ'երեւի վառելանիւթը թափած է եւ պատճառ դարձած հրդեհին: Ամերիկեան ձայնասփիւռը կը հաղորդէ թէ Աթլաս հրթիռը նետելու 6րդ փորձն է որ չի յաջողիր: Անդին Հետախոյզը եւ Սպուտնիկը կը շարունակեն աշխարհի իրենց շըրջանը:

ԱՐԵՒՄՏԵԱՆ ԳԵՐՄԱՆԻՈՅ մէջ արգիլուած համայնավար կուսակցութիւնը վերահաստատելու փորձ մը եղած է Պաւարիոյ մէջ. ոստիկանութիւնը յաջողած է երեւան հանել անոր հեղինակները. 29 հոգի ձերբակալուած է:

ԿԻՊՐՈՍԻ յոյն աճարեկիչներու կազմակերպութիւնը կը սպառնայ վերսկսիլ իր գործունէութեան: Այս ուղղութեամբ բաժնուած թռուցիկներուն մէջ Էօքա կը յայտարարէ.— Պէտք է վերսկսիլ պայքարին, նկատելով որ Անգլիոյ միջամտութեան հետեւանքով հարցը լուծելու ուրիշ միջոց չկայ:

ԱՐԵՒԵԼԵԱՆ ԳԵՐՄԱՆԻՈՅ մամուլի գործակալութիւնը կը հաղորդէ թէ գերման գիտուններ, որ կը գտնուէին Խ. Միութիւն, վերադարձած են իրենց հայրենիքը եւ չեն ուզեր անցնիլ Արեւմտեան Գերմանիա: Պոնէն ալ կը հաղորդեն թէ խնդրոյ առարկայ գիտունները երեք հատ են միայն եւ ոչ մէկ կապ ունին Սոխումի խումբին հետ, որուն հայրենադարձին կը սպասուի:

ՍՈՒՐԻՈՅ զինեալ ուժերու ընդհանուր հրամանատար Աֆիֆ Պզրի եգիպտական մամուլին յայտարարած է, թէ Սուրիա-Եգիպտոս միութիւնը յեղափոխական քայլ մըն է եւ ուժ կուտայ ալժերիական հարցին լուծման:

ՄՈՍԿՈՒԱՅԻ ձայնասփիւռը արաբերէն լեզուով կատարած իր սփռումներուն ընթացքին յայտարարեց, թէ անգլիացի աշխարհակալները երկար ատեն պիտի չկարենան մնալ Ատենի մէջ, նկատելով որ արաբ ժողովուրդը սկսած է իր պայքարին:

## ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Տէր եւ Տիկին Ֆաքիրեան (Ալֆորվիլէն) իրենց ցաւակցութիւնը կը յայտնեն Մոսկոֆեան ընտանիքին իրենց սիրեցեալ մօր այրի տիկին Մոսկոֆեանի մահուան առթիւ եւ փոխան ծաղկեպսակի հազար ֆրանք կը նուիրէ Որբերու Օգն. մարմնին (ստանալ «Յառաջ»էն):

## ՄԻՋԵՐԿՐԱԿԱՆԻ ԿՈՄԻՏԷ

Պատուոյ նախագահ՝ ԺԱԳ ՊԱՐՏՈՒ
Ընդհ. նախագահ ԺՈՐԺ ՊԻՏՕ

### ՊԱՏԱՐԱԳ

Ի յիշատակ՝ Հայ Լէգէոնի Ռազմիկներուն եւ Կամաւորներու, Նահատակներու եւ ֆրանսացի վեց հազար մարտիկներու, արեւելքի առաջին, երկրորդ, երրորդ, չորրորդ զօրաբաժիններուն, ինչպէս նաեւ Արեւելքի ծովային զօրաբաժինին ինկած Պատուոյ եւ Պարտականութեան Դաշտին վրայ Մուսատաղ 1915ին, եւ Կիլիկիոյ եւ Եփրատի կռիւներուն 1919էն 1922:

Կիրակի 16 Փետրուար ժամը 10ին ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ Ս. ԽԱՉ ԵԿԵՂԵՑԻՈՅ ՄԷՋ:

Պատարագը կը մատուցանէ՝

ԳԵՐԱՊԱՅԾԱՌ Կ. Ծ. Վ. ԱՄԱՍՏՈՒՆԻ:

Ներկայ կ'ըլլան բազմաթիւ անձնաւորութիւններ եւ բարձրաստիճան կղերականներ: Կը քարոզէ գերապայծառ Պրեսօլ:

Imprimé sur les presses du journal HARATCH
—— 17, Rue Bleue, 17 — PARIS (9e) ——

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Տէր եւ Տիկին Գրիգոր Թիւաննեան եւ զաւակները կը ծանուցանեն թէ իրենց մօր այրի Տիկին ՇԱՀԶԱՏԷ ՈՒԶՈՒՆԵԱՆԻ մահուան տարելիցին առթիւ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի այս կիրակի առաւօտ, Փարիզի Ս. Յովհ.-Մկրտիչ եկեղեցիին մէջ:

Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յարգողները:

### Բ. ՑԱՆԿ

«ՇԱՆԹ» Գրական - Գեղարուեստական ընկերակցութիւնը շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ նուէրները իր գրադարան - ընթերցարանին համար:

«Հայ Գրագէտներու Բարեկամներ» իր հրատարակութիւններէն 14 հատոր, Պ. Մ. Պարսամեանի ձեռամբ:

Յակոբ Տօլպաշեան հինգ հատոր:
Սուրէն Փափազեան 10 հատոր:
Շնորհիկ Շահլամեան տասը հատոր:
Երուանդ Տէր Մեսրոպեան 10 հատոր:
Ժիրայր Միրիճեան տասը հատոր:
Գամէր Տէր Վարդանեան հինգ հատոր:
Սարգիս Զէօրէկճեան հինգ հատոր:
Արմենակ Շահպահզեան հինգ հատոր եւ արժէքաւոր նկարներ:
Կարապետ Կարապետեան «Յառաջ»ի հաւաքածօն:
Ղազար Տէրտէրեան «Հայրենիք»ներու հաւաքածոնները:

### ԱՂՔԱՏԱԽՆԱՄ

Կոչ թեկնածութեան եւ հրաւէր ընդհանուր ժողովի

Փարիզի Հայ Աղքատախնամ Ընկերակցութեան Բ. ընդհանուր ժողովը տեղի պիտի ունենայ, շաբաթ 8 մարտ 1958, ժամը 16ին: 32 րիւ տը Թրէվիզ, արտակարգ ընդհանուր ժողովէն անմիջապէս յետոյ որ որոշուած է նոյն օրը ժամը 15ին:

Վարչութեան հինգ անդամներու հրաժարականը օրակարգի հարց ըլլալով (կանոնագրութեան թիւ հինգ յօդուածին համաձայն) ընկերակցութեան այն անդամները որոնք կը փափաքին թեկնածու ըլլալ, պարտին իրենց թեկնածութիւնը ներկայացնել ամէնէն ուշը 15 Փետրուարին, վարչութեան գրասենեակը, 32 րիւ տը Թրէվիզ, թեկնածու կրնան ըլլալ միայն այն անդամները որոնք իրենց անդամավճարները կանոնաւորապէս վճարած են երեք տարիէ ի վեր:

Ներքին կանոնագրութեան թիւ 39 յօդուածին համաձայն՝ թեկնածութեան յայտարարութիւնը պէտք է յստակօրէն գըրուած ըլլայ թեկնածուին իսկ ձեռքով եւ պարունակէ իր անունը, մականունը եւ հասցէն:



## ՆՈՒԷՐՆԵՐ

Ս. Ժերմէն Ան Լէյէն Պ. Եղէկէլեան Օննիկ Նշանեանի մահուան առթիւ փոխան ծաղկեպսակի հազար ֆրանք կը նուիրէ «Հայ - Բոյժ»ին եւ հազար ֆրանք «Յառաջ»ի բարգաւաճման:

×

Տէսինէն Պ. Կարապետ Քոփոյեան, Ամերիկայէն վերադարձին առթիւ 2000ական ֆրանք կը նուիրէ Մշակոյթի Տան (ստանալ «Յառաջ»էն), Լիոնի եկեղեցիին եւ Կապոյտ Խաչի Տէսինի դպրոցին: (Վերջին երկու գումարները ստանալ Նուիրատուէն):

## Հ. Յ. Դ. ՈՒՍ. ՌՈՒԲԷՆ ՄԻՈՒԹԻՒՆ

ՀՐԱՊԱՐԱԿԱՅԻՆ ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆ

Նիւթ՝

### ՍՈՒԷԶԻ ՋՐԱՆՑՔԸ

Ա. Պատմական
Բ. Իրաւական
Գ. Միջազգային դաշնագրեր

Դասախօս՝ ԽԱՉԻԿ ՌՇՏՈՒՆԻ

Ուրբաթ, 14 Փետրուար, ժամը ճիշդ 21ին, Քաֆէ Քատէի վերնայարկը:

Միութիւնս սիրով կը հրաւիրէ ընկերները, հայ ուսանողութիւնն ու հայրենակիցները անխտիր:

